ԴԸ ընդհանրապէս «էնթարի» եւ «ապա» կը հագնի: Այս հագուստին վրայէն գլխարկ դնելը բնականաբար ծիծաղելի տեսարան մը պիտի ներկայացնէր: Անկախութեան դատարանը Մարաշէն Ընկիւրի ղրկած է 27 հոգի, բաղկացած վարչական ժողովի, երկրագործական եւ առեւտրական սենեակներու ու թաղապետութեան անդամներէն: Ասոնցմէ զատ ցոյցին մասնակցողներն ալ պիտի ղրկուին շուտով:

Րիզէի մէջ ձերբակալուածներուն թիւը 100ը անցած է:

## Ֆրանքը փրկելու համար

Հիւսիսային Ֆրանսայի մեծ գործարանատէրերը պատուիրակութիւն մը ղրկելով հանրապետութեան նախագահին, յայտնեցին թէ պատրաստ են 10,000,000,000 ֆրանքի փոխառութիւն մը երաշխաւորել, ներքին պարտքի գլխաւճարը հայթայթելու եւ ֆրանքը փրկելու համար:

Այս առաջարկը լաւ տպաւորութիւն ըրած է եւ կը սպասուի ծրագրի մանրամասնութեանց:

Ֆրանքը զգալապէս բարձրացած է երկու օրէ ի վեր:

## ԽԱՂԱՂՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ՊԱՏԵՐԱԶՄ

Պոլսէն հասած հեռագիրներու համաձայն, Թուրք դահլիճը գիշեր ցորեկ ժողով կը գումարէ, Մուսուլի մասին տրուած վճիռին առթիւ, միշտ Մուսթաֆա Քէմալի նախագահութեամբ: Վերջին ժողովին ներկայ էր նաեւ սպայակոյտի պետը, Ֆեվզի փաշա: Երէկ կամ այսօր Ազգ. Մեծ ժողովին պիտի ներկայացուէր խնդիրը: Թերթերը կը շարունակեն բուռն յօդուածներ հրատարակել, յայտնելով թէ Թուրքիա ամէն միջոց ձեռք առած է: «Ճիւմհուրիյէթ» կը գրէ. «Հակառակ Ազգերու Դաշնակցութեան որոշման, Թուրք ժողովուրդը միջոց մը պիտի գտնէ Մուսուլը փրկելու արշաւողներուն ձեռքէն, ինչպէս փրկեց Ատանան, Իզմիրը եւ Պրուսան»:

Թէեւ մամուլը լեցուն է խօսքերով, բայց Պոլիս ռազմաշունչ տրամադրութիւններ չի ցուցներ: Իրազեկներ կը հաւաստեն թէ առեւտրական գործառնութիւններով դրամական հատուցում պիտի ըլլայ Թուրքիոյ, ինչպէս կը նախատեսէ տրուած որոշումը: Շատեր այս կը նկատեն հարցին բանալին, հետեւաբար եւ անհաւանական կը գտնեն պատերազմը:

## Հիւս. Սուրիոյ Հայերը Պէյրութ կ'ապաստանին

«Տէյլի Թէլէկրաֆ» կը գրէ.—

Պէյրութի մէջ Միջազգային Կարմիր Խաչի օժանդակ մարմին մը կազմուեցաւ Սուրիոյ փախստականներուն օգնելու համար: Ամէնէն կարօտեալներու թիւը կը հաշուուի 3000 հոգի եւ առաջիկայ գարնան ասոնց վրայ պիտի աւելնայ 10,000 հոգի եւս, եթէ անոնք ուրիշ տեղ չփոխադրուին: Ճէպէլը Տրիւզի եւ Հասպէյայի շրջանի քրիստոնեաները ամէնէն դժբախտներն են: Հիւսիսային Սուրիոյ մէջ ապստամբներու գործունէութեան հետեւանքով Պաալպէքի, Հոմսի և Համայի շրջաններէն մեծ թիւով գաղթականներ կը հասնին: Այս դժբախտներու կարգէն են Թուրքիայէն Սուրիա եկած Հայերը: Ֆրանսական իշխանութիւնները ամէն ճիգ կ' թափեն անոնց օգնելու համար, բայց կը հաշուուի թէ երկու միլիոն ֆրանք պէտք պիտի ըլլայ ատոր համար:

## Սուրիոյ խնդիրը Խորհրդարանին առջեւ

Սուրիոյ խնդրին մասին առջի օր Ծերակոյտին եւ Երեսփ. Ժողովին առջեւ հարցապնդում ուղղուեցաւ կառավարութեան: Հարցապնդողները մանաւորապէս կը քննադատէին Զօր. Սարայլի քաղաքականութիւնը: Տեղի ունեցան բուռն վիճաբանութիւններ: Զօրավարը ներկայ էր ունկնդիրներու օթեակին մէջ: Պատերազմական նախարար Պ. Փէնլըվէ եւ վարչապետ Պ. Պրիան պատասխանեցին յարձակումներուն, պատմականը ընելով Սուրիոյ դէպքերուն: Վարչապետը յայտնեց թէ նոր մարզպանը խանդավառ ընդունելութիւն գտաւ Սուրիոյ մէջ, ուր իրեն ըսուեցաւ. «Մնացէք Սուրիոյ մէջ, որովհետեւ եթէ Ֆրանսացիները մեկնին, վաղը ջարդ տեղի պիտի ունենայ»: Պ. Վիքթոր Պէռար հաստատեց այս վերջին պարագան: Երկու բանաձեւեր ներկայացուեցան, որոնցմէ մէկը պահանջէր ինքնավարութիւն տալ Սուրիացիներուն, միւսը հոգատարութեան շարունակութիւնը կը պահանջէր եւ կառավարութեան վստահութիւն կը յայտնէր. այս վերջինը ընդունուեցաւ:

## ԿՌԻՒՆԵՐԸ

«Թայմզ» կը գրէ թէ Կուէյկի հովիտին երկայնքը Թուրք հրոսախումբեր տեսնուած են, որոնց նպատակն է անկասկած միանալ կեդրոնական Սուրիոյ ապստամբներուն, մանաւորաբար Իտլիպի եւ Հարիմի շրջաններուն մէջ, ուր հրոսախումբերը սովորաբար կը կատարեն իրենց արշաւանքները: Սահմանագլուխ հասած է յայտնի աւազակապետ մը իր հետեւորդներով, ինչ որ ցոյց կուտայ թէ Այնթապի կոմիտէն մտադիր է գործակցիլ ապստամբներուն հետ. Ուրֆայի շրջանի ցեղերը կը ծրագրեն արշաւել սուրիական Միջագետքի վրայ: Թուրք իշխանութիւնները պետերը հաւաքելով քաղաքապահ զօրամասեր կազմեցին, երեւոյթապէս աւազակները պատժելու համար, սակայն կը վախցուի որ Ուրֆայի աշիրէթները թալանեն Ճէզիրէն:

Տիւրզիները Լիբանանի շրջանին մէջ կը շարունակեն յարձակիլ քրիստոնեայ գիւղերու վրայ: Զէյտ էլ Աթրաշի ռազմաշունչ կոչը կարդացուեցաւ Հոմսի մզկիթներուն մէջ, մեծ գրգռութիւն առաջ բերելով: Դամասկոս դարձող զօրամաս մը երկու կողմէն ապստամբներու յարձակումին ենթարկուեցաւ: Համայի պատերազմ. ատեանը 15 հոգի մահուան դատապարտեց:

### ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

Հացը 1.70ի պիտի ծախուի յառաջիկայ Դեկտ. 29էն սկսեալ:

— Մեզի կը հաղորդեն թէ Աբէլ Նազարեան, Լոնտոնի վարդապետ հերոսը, Ֆրանսա կը գտնուի 15 օրէ ի վեր, իր առեւանգած կնոջը հետ, եւ ագարակ մը կը փնտռէ, վերջնապէս հաստատուելու համար:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. «Արմէն-Գարօ» Թաղային կոմիտէի դասախօսական ժողովը տեղի կ'ունենայ այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30 ին 1, rue de Tournon Մէթրօ Օտէօն: դասախօս Շ.:

«ԶԱՓԱՀԱՍ ՈՐԲԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ»ը ատիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները եւ փարիզաբնակ բոլոր չափահաս որբերը: այսօր, կիրակի երեկոյ ժամը 8ուկէսին 169 rue Belleville, Cour de Danse Օրակարգ՝ 1. Ընթերցում եւ վաւերացում ծրագիր-կանոնագրի. 2. ընտրութիւններ:

### ՍՏԱՑԱՆՔ

«ԲԺԻՇԿԻՆ ԳԻՐՔԷՆ ՓՐՑՈՒԱԾ ԷՋԵՐ» Տօքթ. Ռուբէն Չիլինկիրեանի (Ռ. Սեւակ): Հրատարակութիւն «Գողթան» գրատան, Սելանիկ: Տպ «Նոր Ալիքի» 1925. 125 էջ: Գին Ֆրանսայի համար 10 ֆրանք:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Եօզկատի Մեծ Չաթէն Ջատիկ Թորոսեան կը փնտռէ հօրեղբօր թոռը Համբարձում Թորոսեանը որ երկու տարի առաջ Սուրիոյ Ճիպէյլի Որբանոցը կը գտնուէր: Տեղեկացնել 8 rue des Trois Portes, Paris, Սիրական Յովհաննէսեանի:



## Կ'ՈՒԶՈՒԻ

Ատամնաբոյժի մը մօտ ծառայելու համար կ'ուզուի ֆրանսերէն գիտցող հայ օրիորդ մը նպաստաւոր պայմաններ. գրել Արամ Քիթապճեանի 94, Bd. Rochechouart.



Le Gérant: H. TEURNIER
Impr. MASSIS
208bis, Rue Lafayette Paris(10e)

պատճառն ալ այն էր որ ուզեցինք միանգամ ընդ միշտ վերջ տալ ատեն ատեն անգլեւամերիկեան մամուլին մէջ հրապարակ նետուած այն սուտ զրոյցներուն թէ Ռուսիոյ եւ Իտալիոյ միջեւ համաձայնութիւն կնքուած է ընդդէմ Թուրքիոյ։ Միւս կողմէ Խորհրդային Միութիւնը գիտէր որ կարգ մը պետութիւններ կ'ուզէին Թուրքիան առնել հակապոլշեւիկեան միութեանց մէջ։ Այս դաշնագիրը ոչ ոքի դէմ ուղղուած է եւ ոչ ոքի շահուն կը վնասէ։ Որ եւ է գաղտնի յաւելուած չկայ։

## Անկախութեան դատարանը Պոլիս կ'երթայ

Անկախութեան դատարանը Սամսոնէն Պոլիս հասած է երկուշաբթի օր։ Ոստիկանութիւնը մեծ կարեւորութիւն կուտայ Աթըֆ հոճայի գլխարկի մասին գրած գիրքին եւ անոր հետ հեռուէն կամ մօտէն կապ ունեցող բոլոր մարդիկը կը ձերբակալէ։ Ձերբակալուածներէն շատեր պատրաստութիւն տեսած էին Անատոլու մեկնելու, բայց բռնուեցան։ Անկախութեան դատարանին առջեւ պիտի դատուին յիշեալ գիրքին հեղինակը Աթըֆ հոճա, հրատարակիչը Միհրան Մարտիրոսեան, մեղսակիցներ՝ հոճա Իզզէթ եւ Պայազիտի մզկիթին քարոզիչը։ Գրավաճառ Միհրան էֆէնտիէ զատ ձերբակալուած է նաեւ տպագրիչ Պետրոս Գեղէոն, որ նոյնպէս անկախութեան դատարանին պիտի յանձնուի։ Կալանաւորներէն մաս մը Էնկիւրի պիտի փոխադրուի։

⁂ Մարաշի դէպքին առթիւ Էնկիւրի ղրկուած են քաղաքին հասարակութեան ամենէն երեւելի դէմքերը, Խալք կուսակցութեան նախագահ Գատը զատէ Զիա, Շիշմանզատէ, Հաճի պէյ զատէ, Գօճապաշ զատէ, Տէտէ զատէ, Տարէնտէ զատէ ընտանիքներու պետերը, Թիւրք Օճաղըէն Տօքթ, Վէլիէտտին, Ալի փաշա եւլն., բոլորն ալ պետական պաշտօնեաներ։

## Ներքին պայքար Մոսկուայի մէջ

Վերջին հեռագիրներու համաձայն, շատ սուր հանգամանք ունի ռուս կոմունիստ կուսակցութեան համաժողովին մէջ ծագած պայքարը, Լէնինկրատի (Զինովիէվ-Քամէնէֆ) խմբակին եւ Մոսկուայի (կեդր. կոմիտէ) միջեւ։ Առաջին երկուքը կը պնդեն թէ Խորհրդային Միութիւնը չի կրնար յաղթել իր ներքին տնտեսական եւ արհեստագիտական դժուարութեանց, առանց համաշխարհային յեղափոխութեան։ Պաշտօնական քաղաքականութեան կուսակիցները, որոնք կարեւոր պաշտօններ ունէին Լէնինկրատի մէջ, փոխուած են կեդր. կոմիտէի հակառակորդներուն կողմէ։ Լէնինկրատի ամբողջ պատգամաւորութիւնը, գլուխն ըլլալով Զինովիէվ, հակառակ է Մոսկուայի վարիչներուն։ Ստալինի զեկուցումէն յետոյ, Լէնինկրատի պատգամաւորութիւնը պահանջեց որ ընդդիմախօսական զեկուցում մը ըլլայ Զինովիէվի կողմէ։ Այս առաջարկը զայրոյթով ընդունուեցաւ ժողովին կողմէ. բայց քուէարկուեցաւ, համաձայն կանոնագրին։ Այս առթիւ «Փրավտա» կը գրէ. «Առաջին անգամ է որ այսքան անլուր իրողութիւն մը կ'արձանագրուի կուսակցութեան պատմութեան մէջ»։ Յաջորդով՝ վէճին մանրամասնութիւնները։

## Ելմտական տագնապը

Նախարարական Խորհուրդը բացառաբար նիստ գումարեց Ծնունդի առտուն եւ քննեց ելմտական նոր ծրագիրը։ Երկու ժամ վիճաբանելէ յետոյ, հաստատուեցաւ թէ անկարելի է համաձայնութիւն գոյացնել առեւտրական գործառնութեանց տուրքը 100ին 100 աւելցնելու առաջարկին վրայ և որոշուեցաւ Երեքշաբթի օրուան յետաձգել խնդիրը։ Այս պայմաններուն մէջ, հաւանական չէ որ ելմտական ծրագիրը Խորհրդարանին յանձնուի Յունուար 1էն առաջ։ Ձախակողմեան հոսանքը բոլորովին տարբեր ծրագիր ունի, ու կ'առաջարկէ մէկ միլիառ ֆրանք խնայողութիւն կատարել, ծախել շատ մը պետական կալուածներ, տուրք մը հաստատել արտածման վրայ եւլն.։

## Յունաստանի Հայերուն զինուորագրութիւնը

Գրած էինք թէ Յունաստանի Հայերը սկսած են զինուորագրուիլ։ Նոր տեղեկութեանց համաձայն զինուորագրութեան ենթակայ են միայն այն Հայերը, որոնք հելլէնահպատակ արձանագրուած եւ կամ քաղաքացի եղած են։ Մնացած Հայերը պէտք է իրենց քաղաքացիական դիրքը ճշդեն. Թրքահպատակները Աթէնքի Թուրք հիւպատոսարանէն համապատասխան թուղթեր պէտք է ստանան, իսկ ո եւ է հպատակութիւն չունեցողները Նանսէնեան անցագիր առնելու են։

## Նուէր «մահատակ»ներուն

Էնկիւրի որոշեց Հայոց «լքեալ» գոյքերէն տուներ նուիրել ընտանիքներուն այն Թուրք պետական անձերուն, որոնք սպաննուած են Հայերու կողմէ։ Ասկէ զատ Հայոց «լքեալ» գոյքերը հաւասար կերպով պիտի բաժնուին ընդհանուր պատերազմէն վնասուած վայրերու բնակիչներուն։ Առաջարկ կայ Յոյներու լքեալ գոյքերէն ալ բաժին հանել «նահատակ»ներու ընտանիքներուն։

## Տասը միլիոն ֆրանքի կեղծ դրամ

Ազնուական ընտանիքէ երեք Հունգարացիներ ձերբակալուեցան Ամսթէրտամի մէջ, իբրեւ կեղծարար։ Կ'ենթադրուի թէ մինչեւ տասը միլիոն ֆրանքի ֆրանսական թղթադրամ շինած են։ Դրամանենգներէն մէկը հունգար նախարարի մը ազգական է, միւսը «Շօզա» թերթի աշխատակիցը եւ հունգարացի ֆաշիստներու ընկերութեան քարտուղարն է եւ բարձր դասու մէջ մեծ յարգանք կը վայելէր։ Մեղսակիցներէն երկուքը ազնուականի մը փեսաներն են եւ հանրածանօթ են մաճառ ընկերութեան մէջ։

## Թրքուհիները քրիստոնեայ չեն կրնար առնել

Հակառակ եւրոպականացման իրենց ճիգերուն, քաղաքային ամուսնութեան նոր օրէնքին մէջ յօդուած մը դրուած է, որով Թըրքուհիներուն կ'արգիլուի ամուսնանալ քրիստոնեաներու հետ։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԱՀԱՅ Երկսեռ Երգչախումբի փորձերը տեղի կ'ունենան 95, Bld. St. Germain, Café du Métroի վերնայարկը՝ Երկուշաբթի եւ Ուրբաթ իրիկունները ժամը 8.30էն 10։ Կը խնդրուի մասնակցութիւնը նոր երգչուհիներու եւ երգչախումբերու մէջ փորձուած ténorներու, որոնք պիտի վարձատրուին։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՎԻԷՆ. Թղթ.— Նաւասարդի խրաքանչիւր թիւը 5 ֆրանք է, հասցէն որոշ գրեցէք։

ՔՈՒԹԻՒՐ, Ա. Վ.— Ստացանք մանրափոստը. Թերթը կը ղրկուի Դեկտ. 23ի թիւէն։

ԼԻՈՆ, Յ. Ն.— Հ. հրատարակեցինք. 20 ֆրանք պէտք է ղրկէք։

ՎԵՐՏ, Յ. Պ.— Ստացանք նամակեան։

ՍԷՆ ՇԱՄՈՆ, Պ. Մ.— Ստացանք ձեր եւ Տ. Մ.ի բաժնեգինները։

ՎԱԼԱՆՍ, Ն. Ս.— Ստացանք 20 ֆրանք. Ե. Խ.ի հաշուոյն, հասցէն փոխեցինք. ծրարը նոյնպէս նոր հասցէով։

ԼԱՊԷԿԻՒՏ, Ն. Պ.— Ստացանք մանրափոստը։

ՏԷՍԻՆ, Գ. Զ.— Ստացանք բաժնեգինը։

ՄԱՐՍԻԼԻԱ, Ս. Ս.— Ստացանք բաժնեգինը։

ԱՆՎԵՐՍ, Ն. Զ.— 40 ֆրանք է երկուքին համար։

ՆԻՍ, Ս. Ն.— Ստացանք տարեկան բաժնեգինը։

ՊՕՌՏՕ. Գործ.— Ստացանք 75 ֆրանք։

ՇԱԹ.— Վ. Գ.— Ստացանք մանրափոստը. կը ղրկուի 27 Դեկտ.ի թիւէն։

ԱՐԼԸ, Գ. Ա.— Կը ղրկուի Դեկ. 25էն.



Le Gérant : H. TEURNIER
Impr. MASSIS
208bis, Rue Lafayette Paris(10e)

